1917 № 24—ՅՈՒՆԻՍԻ 25 ԵՐԿՐՈՐԴ ՏԱՐԻ

# ՀԱՄԲԱՒԱԲԵՐ

ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳՐԱԿԱՆ ԵՒ ՔԱՂԱՔԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ

ԿՈՎԿԱՍԻ ՀԱՅՈՑ ԲԱՐԵԳՈՐԾԱԿԱՆ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ

10 կոպէկ Լոյս է տեսնում կիրակի օրերը 10 կոպէկ

ԲԱԺԱՆՈՐԴԱԳԻՆԸ տարեկան 4 ռուբլի, կէս տարուան 3 ռուբլի.
Արտասահման՝ տարեկան 5 ռ., կէս տարուան 3 ռ.

ԽՄԲԱԳՐՈՒԹԻՒՆԸ՝ Թիֆլիս, Արտաարադեան հրապար. № 7.
Հեռախօս № 29.

Փոստի հասցէն.— Тифлисъ, „Амбаваберъ", Tiflis, Rédaction du journal «Hambavaber».

ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆՆԵՐ՝ տողին 10 կոպէկ.

Խմբագրութիւնը բաց է առաւօտեան ժամի 10—2, բացի կիրակի և տօն օրերից
Տպագրուելու ուղարկուած ձեռագրերը կարող են ենթարկուել փոփոխման և կրճատման:

Տպագրութեան համար անյարմար ճանաչուած մեծ յօդուածները պահւում են վեց ամիս խմբագրատանը, իսկ փոքրերն անմիջապէս ոչնչացւում:

Տպագրութեան համար անյարմար թղթակցութեանց և յօդուածների առթիւ խմբագրութիւնս պարտաւոր չի համարում գրաւոր բացատրութիւններ տալ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ



## ԳԻՒՂԱՑԻԱԿԱՆ ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

Ռուսաստանի մեծ յեղափոխութեան նպատակն է եղել խորտակել հին կարգերը՝ հիմնուած անարդարութեան և բռնութեան վրայ և ստեղծել քաղաքական, հասարակական ու տնտեսական նոր կեանք:

Յեղափոխութեան հողմը մաքրեց ասպարէզը հին կարգերից, անհետացրեց նրանց անվերադարձ, իսկ նոր կարգերն էլ դեռ չեն հաստատուած և կեանքի մէջ չեն մտցրուած:

Մենք այժմ գտնւում ենք ստեղծագործական շրջանում:

Պատուցելիք պետական նոր շէնութիւնը պէտք է դրուի ժողովրդապետական լայն սկզբունքի վրայ և ոչ մի շեղումն այդ սկզբունքից թոյլատրելի չէ:

Վերաշինութեան բոլոր հարցերը իրենց լուծումնստանալու են մօտ ապագայում սպասելիք Սահմանադիր ժողովից:

Այժմ մեր ժողովրդի բոլոր մտաւոր և բարոյական ույժերը ամենալարուած կերպով և անընդհատ պէտք է զբաղուած լինեն նախապատրաստական աշխատանքներով Սահմանադիր Ժողովի համար:

Պատմական մեծ վայրկեանի առաջ ենք կանգնած:

Եւ ով կը մնայ անտարբեր դէպի Սահմանադիր Ժողովը, ով վաղօրօք չի մշակի իր պահանջները և լաւ մտածուած կերպով չի ձևակերպի ներկայացնելու Սահմանադիր Ժողովին, նա անուղղելի սխալմունք կատարած կը լինի և կը տուժի ապագայում: Այս մտահոգութեամբ միայն կարելի է բացատրել այն շարժումն, որը մտել է Ռուսաստանի գիւղացութեան մէջ. գիւղ ու գիւղական համայնք, գաւառ ու նահանգ կազմակերպւում են, քննում են ժողովներում հարցեր, մշակում են ծրագրեր իրենց տեղական կարիքներին վերաբերեալ, մի խօսքով լուրջ կերպով պատրաստւում են Սահմանադիր Ժողովի համար:

Մեր երկրում՝ Անդրկովկասում գիւղացութեան մէջ նոր է սկսւում նոյն ոգով և ուղղութեամբ շարժումն:

Այդ շարժման հետևանքը պէտք է համարել և Թիֆլիսում բացուած գիւղացիական միութիւնների համագումարը:

Համագումարին մասնակցում են հազարից աւելի

պատգամաւորներ՝ եկած երկրիս բոլոր մասերից և բոլոր ազգութիւնների կողմից։

Այս համագումարը պէտք է համարել մի մեծ պատմական և ուրախալի երևոյթ մեր երկրի համար։

Համագումարը թէ իր ծրագրով և թէ իր կազմով արժանի է լուրջ ուշադրութեան. Անդրկովկասը դեռ չի տեսել մի այսպիսի մեծ և պատկառելի ժողով։ Համագումարի նպատակն է՝ կազմակերպել Անդրկովկասի գիւղացութիւնը առանց ազգի խտրութեան և պարզել գիւղացի ժողովրդի կենսական պահանջները և նրանց լուծման ձևը։

Գիւղացութեան ձայնը միայն այն ժամանակ լսելի կը լինի, գիւղացութիւնը միայն այն ժամանակ կը հանդիսանայ ղեկավարող պետական կեանքի մէջ, երբ նա կը կազմակերպուի առանց ազգի խտրութեան՝ աշխատաւոր դրօշակի տակ և երբ իրենից կը ներկայացնի մի հզօր կազմակերպուած ույժ։ Գիւղացութեան բարդ շահերը լիովին պաշտպանելը ուրիշ միջոցով համարեա անկարելի է։

Աշխատաւոր գիւղացութեան կարիքները շատ են, նրա ցաւերը անթիւ են, նրան դարերի ընթացքում վիճակուած է եղել ստրկութեան մէջ լինել։

Գիւղացութիւնը միշտ եղել է իրաւազուրկ, նա եղել է միշտ հողազուրկ։

Ահա այն աղբիւրը, որից միշտ ծագել է գիւղացութեան համար ամեն մի չարիք և որը այսուհետև պէտք է իսպառ ոչնչացնել։ Գիւղացութեան կարիքները, ցաւերը թէև շատ են, բայց նրանց կարելի է ամփոփել մի երկու խօսքով. «Գիւղացութեան հարկաւոր է ՀՈՂ եւ ԱԶԱՏՈՒԹԻՒՆ»։

Այս երկու պահանջները աշխատաւոր գիւղացութեան կողմից և արդարացի են և լիակատար ու շուտափոյթ բաւարարութեան արժանի։ Գիւղացին առանց ազատութեան և հողի չէ կարող ապրել այնպէս, ինչպէս թռչունը առանց օդի, ձուկը առանց ջրի։

Յեղափոխական կառավարութեան հրովարտակով արդէն տրուած է բոլորին, հետևապէս և գիւղացութեան, խօսքի, խղճի և այլ ազատութիւններ։

Սակայն գիւղացու ազատութիւնը ոչինչ է, եթէ նա չունի իր ձեռքում հող, որը նրան հնարաւորութիւն տայ ստեղծելու անկախ կեանք։

Ստրկական դրութիւնը ստեղծում է ոչ թէ իրաւազրկութիւն, այլ և տնտեսական պայմաններ։

Գիւղացին անհատական ազատութիւն ստացաւ և ցարիզմի ժամանակ, 19 փետրուարի 1869 թ. հրովարտակով, բայց այդ ազատութիւնը անբաւարար դարձաւ, նրան ոչինչ չը տուեց. գիւղացու իրաւական դրութիւնը չը փոխեց դէպի լաւը, որովհետև գիւղացին մնաց կալուածատիրոջ հողի վրայ և տնտեսապէս ստրուկ կալուածատիրոջ առաջ։

Այժմ գիւղացու ազատութեան հետ պէտք է անպատճառ կապուած լինի և հողային խնդիրը։

Պէտք է իրականացնել այն ճշմարտութիւնը, որ հողը հողագործինն է, որ նա առանց հողի ոչինչ է, որ նրա գոյութիւնը, անկախութիւնը, ազատութիւնը կախուած են հողից եւ հողից։

Համագումարը լուրջ կերպով պէտք է կանգ առնի հողի խնդրի վրայ և դրան կից միւս տնտեսական խնդիրների վրայ։ Գիւղացութեան իմաստութիւնը ցոյց կը տայ այս հարցի լաւագոյն լուծումը, որը ըստ մեր կարծիքի պէտք է լինի հողի համայնացումը։ Այս ձևի հողատիրութիւնը համապատասխանում է մեր իրականութեան. մեր գիւղերի մեծամասնութիւնը, քիչ բացառութեամբ, այժմ էլ օգտւում է հողից այդ ձևով. պետական որոշ հողամասեր տրուած են օգտուելու գիւղական հասարակութիւններին անբաժան. գիւղական համայնքն է տէր ու տնօրէնը հողի, նա է կտոր-կտոր բաժանում իր անդամների մէջ, երբեմն և վերաբաժանում է ըստ կատարուած փոփոխութեան շնչերի ընտանիքներում. ոչ մի գիւղացի իրաւունք չունի ծախելու, գրաւ դնելու իր ձեռքի հողաբաժինը, որովհետև նա սեփականութեան իրաւունք չունի։

Գիւղացութեան ձեռքում եղած հողը շատ սակաւ է, նրան հնարաւորութիւն չէ տալիս իր կարիքները լրացնելու հողագործութեամբ։ Ահա թէ ինչու անհրաժեշտ է բաւարարութիւն տալ գիւղացութեան ազատ պետական, վանքական, կալուածատէրերի, մանաւանդ մեծ իշխանների ու կայսերական տանը պատկանող հողերից։ Համագումարը այս հարցի և միւս գիւղացութեան տնտեսական հարցերի մասին պէտք է յանգի որոշ դրական եզրակացութիւնների, որպէս զի, հիմնուելով այդ եզրակացութիւնների վրայ՝ պարզ ծրագիր ներկայացնուի Սահմանադիր ժողովին, իբր պահանջ Անդրկովկասեան գիւղացութեան կողմից։

Ողջունելով Անդրկովկասեան անդրանիկ գիւղացիական Համագումարը, ցանկանում ենք գիւղացութեան, առանց ազգի խտրութեան, համերաշխ գործակցութիւն, իսկ Համագումարին՝ բեղմնաւոր արդիւնք։

Ս. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆՑ

# ՅՈՒՆԻՍԻ 18-Ը

*Յունիսի 18-ը պատմական օր է ժամանակակից Ռուսաստանի համար։ Այդ օրը ռուսական զօրքի մի մասը, որ գործում է Գալիցիայում, վերսկսեց պատերազմական գործողութիւնները, քաջաբար առաջ արշաւելով և հէնց միևնոյն օրը նշանաւոր յաջողութիւն ձեռք բերելով։*

*Այս խոշոր դէպքը չէ կարելի նկատել իբրև մասնաւոր ձեռնարկութիւն։ Պատերազմի մինիստր Կերենսկին հրատարակեց մի հրաման, որ ուղղուած է ռուսական ամբողջ բանակին և որի իմաստն է՝ «Յառա՜ջ»։*

Այս մօտիկ օրերը ցոյց կը տան թէ ինչ չափեր կընդունէ ռուսական արշաւանքը և թէ ինչ ազդեցութիւն առաջ կը բերէ նա համաշխարհային ռազմաբեմի վրայ։

Մեզ, Ռուսաստանի քաղաքացիներիս, այս խոշոր դէպքը առաւելապէս հետաքրքրում է մեր ընդհանուր հայրենիքի ճակատագրի տեսակէտից։ Ինչ ելք էլ ունենայ սկսուած մեծ շարժումը, փաստը կատարուած է, ուժեղ խօսքը արտասանուած է։ Աշխարհի առջև կանգնած է ռուսական ոյժը, որ հրամանով չէ գործում, մահուան պատժի երկիւղի տակ, այլ իր սեփական կամքով, գիտակցօրէն։

Այս անօրինակ փաստի միջից է ահա որ իր դէմքը ցոյց է տալիս վաղուայ Ռուսաստանը, մտրակի խնամակալութիւնից ազատուած այն մեծ ժողովուրդը, որ այսօրուանից պիտի ստանայ իրաւունք իր խօսքը մտցնելու համաշխարհային պատմութեան մէջ։

Եւ այդ խօսքին ամեն մէկն սպասում էր անձկութեամբ, շնչասպառ։

Չորրորդ ամիսն է՝ Ռուսաստանը գտնւում է յեղափոխական դրութեան մէջ։ Եւ այսքան ժամանակ իրերի ընթացքը, առօրեայ փաստերը կարծես այն էին թելադրում թէ Ռուսաստանը պատրաստ չէ ազատութեան բարիքները վայելելու, թէ ազատութիւնը նրան բերել է միայն անիշխանութիւն, լքում, քայքայում։ Կազմալուծման սարսափն էր հասնում ռուսական մեծ բանակը։ Նրան արդէն արհամարհում էին թշնամիները։ Հաշտութեան ջանքեր արաւ ռուս յեղափոխութիւնը, բայց ի զուր... Այդ ջանքերը համարուեցին թուլութեան ապացոյց և իբրև պատասխան՝ առաջարկուեցին նուաստացուցիչ պայմաններ։

Ամօթն ու խայտառակութիւնն էր կանգնել մեր հայրենիքի շէմքին։ Նրան արդէն ջնջում էին մեծ ազգերի ցանկից, նրա ճակատի համար պատրաստւում էր «դաւաճանի» յաւիտենական խարանը։

Ներսում, բանակի թիկունքում, աւելի մեծ քայքայում էր տիրում։ Թւում էր թէ եկել է Ռուսաստանի, իբրև պետական կազմակերպութեան, վախճանը։ Դա մի փտած, նեխուող մարմին էր, որի վրայ ամեն մէկն անդամահատութիւն էր կատարում և վերցնում էր ինչ կտոր որ ուզում է։

Եւ այս ամբողջ թոհ ու բոհի մէջ, այս իրարանցման ժխորից գլուխ էր բարձրացնում սոսկալի, կոշմարային հարցը։ Մի՞թէ ազատութիւնը կարող է մի երկիր սպանել։ Միթէ ճիշտ էին ասում ռուս ցարականներն ու եկեղեցականները թէ միայն ինքնակալ բռնապետութիւնն է մեծ Ռուսաստան ստեղծել և միայն նա է, որ կարող է այսուհետև էլ հաւաքած պահել ռուսական երկիրները։

Ամենացաւալին այն էր, որ վարկաբեկւում էր համաշխարհային ազատական գաղափարը։ Ազգերն ապշած նայում էին Ռուսաստանի օրինակին և ասում.— ա՛յս է եղել ազատութիւնը, ա՛յս է եղել այն մեծ ու լուսաւոր իդէալը, որ միայն թղթի վրայ է գեղեցիկ, իսկ իրականութեան մէջ այն է առաջացնում, որ քայքայում և սպանում է մի ամբողջ մեծ երկիր։ Ռուսական օրինակը չէր կարող ոգևորիչ, վարակիչ լինել ամեն մի երկրի համար, որ ազատութիւնից բարիք ու երջանկութիւն է սպասում և ոչ թէ անկում ու անյայտացում։

Այսպէս էր մինչև յունիսի 18 ը։

Բայց յունիսի 18-ը գալիս է համաշխարհային մի յուսատու օր դառնալու։ Ազատութիւնը վարկաբեկուած չէ։ Ռուսաստանը դիակ չէ, այլ ունի կազմակերպուած գիտակից ոյժ, որ շարժուել գիտէ։ Նա, ուրեմն, կենսունակութեան հիւթեր շատ ունի իր կազմուածքի մէջ և թոյլ չի տայ որ իրան տանեն դրսի թշնամիները և ներսի անիշխանութիւնը։

Ապացոյցը տրուած է։ Մնում է սպասել որ այս մեծ շարժման մէջ մանէ ամբողջ ռուսական բանակը։ Այդ կը լինի մի վիթխարի ապացոյց թէ հայրենիքի շահերի գիտակցութիւնն ընդգրկել է ռուս ժողովրդի և Ռուսաստանի բոլոր ժողովուրդների հաւաքական ոյժերը։

Կը լինի՞ այս բանը մերձաւոր ապագայում։ Թերահաւատութեան տեղիք չը կայ։ Չը մոռանանք որ այս մեծ շարժման մէջ խոշոր դեր կատարել է մի անհատ—պատերազմի մինիստր Կերենսկու անսպառ եռանդը։ Նրա գործը կատարեալ հրաշքի է նման, և ապացոյց է թէ վտանգի բոպէին ամուլ ու անկարող չէ հանդիսանում ռուս ժողովրդի հանճարը, այլ ուժեղ և տաղանդաւոր անհատներ է հանում՝ իր յեղափոխութիւնը մեծ յաջողութեան ճաճանչներով պսակելու համար։

Վաղուան օրը մռայլ ու խաւարային չէ երևում։ Ռուսական հայրենիքի ամեն մի մասնիկ, ինչ ազգից և լեզուից էլ բաղկացած լինի նա, եթէ անկեղծօրէն հաւատում է թէ ապագայ պետական ազատ կազմակերպութեան անդամ լինելն է իր իսկական երջանկութեան և ազգովին զարգանալու երաշխիքը,— իւրաքանչիւր այսպիսի մասնիկ յունիսի 18 ից յետոյ հնարաւորութիւն է ստանում աւելի ապահով լինելու իր ապագայի վերաբերմամբ։

Իսկ բոլոր կռուող երկիրների ժողովուրդներին ներելի պիտի լինի յուսալ թէ այս շարժումը, այդ յունիսի 18-ը, մօտեցնում է անիծապարտ պատերազմի վերջը։ Երեք տարի է՝ քարուքանդ է դառնում աշխարհը։ Սկսողները, ղեկավարները, դիտողները շատ չեն սարսափում այս ահռելի երկարատև սպանդանոցից։ Նրանք, այնուամենայնիւ, ունին իրանց սպիտակ հացն ու խորտիկները։

Մենք, որ ժամերով արևի և անձրևի տակ հերթ ենք պահում մի կտոր թեփի կամ ցեխի հաց ստանալու համար, մենք որ տապակւում ենք առանց ջրի, մենք, որ այլ ևս արտասունք չունենք մեր կորուստների վրայ կաթեցնելու համար,— մենք լաւ գիտենք թէ ինչ է նշանակում այս—պատերազմի վերջ...

ԼԷՕ

# ՁՕՆ ՀԱՅ ՈՐԲԵՐԻՆ

## «ՄԱՆՉԵՍՏՐ ԿԱՐԴԻԸՆ» ԵՒ ՀԱՅ ՈՐԲԵՐԸ

«Մանչեստըր Կարդիըն» Անգլիայում ամենաուղիղ և անկասկած ամենահեղինակաւոր թերթերից մէկն է, եթէ ոչ առաջինը. երկու տարիներից ի վեր նա եղել է գլխաւոր աղբիւրը հայկական կեանքի ծանօթացման՝ Անգլիայում։ Մանչեստըրի մէջ վերջերս պ. Մանաշեանի նախաձեռնութեամբ կազմուած հայ որբերի ֆոնտը (որի նախագահն է Մանչեստըրի քաղաքագլուխը), այսօր այդ թերթի էջերում հրատարակուած է մի կոչ՝ օգնելու հայ որբերին։

Յենուելով այդ կոչի բովանդակութեան վրայ, թերթը գրել է հետևեալ խմբագրականը՝ «Հայ որբերի ֆոնտը» վերնագրով.

«Այսօր մենք հրատարակում ենք Մանչեստըրի Լորդ-Քաղաքագլխի և ուրիշների կողմից մեզ ուղարկուած մի կոչ ի նպաստ հայ որբերին, որոնք կորցրել են իրենց հայրերն ու մայրերը թիւրքական ահաւոր կոտորածների ընթացքում։ Ի հարկէ ներկայ հանգամանքներում բնականօրէն մենք մեծ դժկամակու-

թեամբ դիմում ենք հասարակական հանգամանկութեան, երբ բարի սրտերը արդէն տալիս են այնպիսի շատ ուրիշ նպատակների համար. սակայն անոնք որ լաւ ծանօթ են այդ դժբախտ երեխաների կրած տառապանքներին, ոչ մի կերպով չեն վարանիլ դիմելու այդ քայլին։ Ցաւոյ ներկայ րոպէն այնչափ էլ վատ չէ, որովհետեւ գութը չի բովանդակեր մրցութեան տարր, այլ կը ծաւալի ջերմեռանդ սրտերի բաբախումներով։ Բաց աստի, աւելի քան որեւէ ժամանակ մենք սկսում ենք հասկանալ Արեւելքի դերը ներկայ պատերազմում, եւ մենք պէտք է ընդունենք որ այն երեխաները, որոնց օգտին հաւաքուած է այս փողը, որբացած են յանուն դաշնակիցների դատին։ Թիւրքը սպանեց անոնց ծնողները, որովհետեւ անոնցմէ շատերը կռուեցան դաշնակիցների կողքին, եւ ապստամբ մի ազգի հետ Թիւրքի վերաբերմունքի միակ եղանակն է սպանել նրան։ Ուրեմն մեր պարտքն է ոչ թէ սանձել մեր կարեկցութիւնը հանդէպ այն երեխաներին, որոնք կորցրել են իրենց բնական պաշտպան ձեռքերը, այլ անել նրանց համար այն ամեն ինչը որ մենք կարող ենք։ Դժբախտաբար մենք կարող ենք միմիայն օգնել այն եղանակով՝ ինչպէս որ կոչ ստորագրողները խնդրում են։ Եթէ նոյն իսկ մենք անենք բոլորը ինչ որ հնարաւոր է, այս պատերազմում Հայաստանը դարձել ամենաշատ զոհուած երկիրն կը լինի—նոյն իսկ աւելի քան Սերբիան. պատմութեան մէջ չկայ աւելի ահաւոր հոգեվարք քան հայկականը։ Հայաստանը մի հեռաւոր երկիր է, օժտուած թէեւ տխուր բայց այնպէս մի վեհ պատմութեամբ, եւ մեզնից շատ քիչերն կարող են ըմբռնել նրա գեղեցիկ բնութիւնը։ Միակ վաճառականական յարաբերութիւնը միշտ վրիպում է յայտնագործելու մի ազգի հոգին, եւ այս սարսափելի ողբերգութիւնը կրող Հայաստանը՝ վաճառականութեան Հայաստանը չէ, այլ մերկ սարալանջերի հարուստ եւ արգասաբեր հովիտների, մի պարզակեաց եւ հիւրընկալ գիւղացութեան, մի տոկուն եւ ազնիւ ոգի անձնաւորող Հայաստանն է. մի աւելի թոյլ եւ մեղկ ցեղ երբեք չէր կառչի իր դաւանանքին, ինչպէս փարել է Հայաստանը իր հաւատքին։ Հայաստանը ծնում է նաեւ քաջ մարդիկ, որոնք ներկայ հանգամանքներում արժանի են բարեկամութեան եւ գուցէ այս պատերազմի վերջաւորութեան, նրանց վերապահուած է մի մեծ ապագայ՝ երբ ազատագրուի Արեւելքը։ Սակայն, ինչ որ էլ լինի ապագայի պատեհութիւնը, դա կախուած է այն երեխաներից որոնց ի նպաստ մենք այսօր հրատարակում ենք մի կոչ»։

Լոնդոն

ԱՐՇԱԿ ՍԱՖՐԱՍՏԵԱՆ

---

# ՆՈՐ ՅԵՂԱՓՈԽՈՒԱԾ ՌՈՒՍԱՍՏԱՆԸ ԵՒ ՀԱՅԱՍՏԱՆԸ

Ռուսական յեղափոխութեան յաղթանակը տեսնելով՝ հայ դատի բարեկամներից մի քանիսը մեզ ուղղեցին շնորհաւորութիւններ։ Մեր բարեկամները խնդակցում են մեզ հետ՝ համոզուած լինելով որ Ռուսաստանում հասարակական թէ քաղաքական ազատ կարգերի հաստատութիւնով հայերի նուիրական բաղձանքն եղող հայ-ազգային դատի բարենպաստ լուծումը ապահովուած կը լինի։

Արդարեւ, տրամաբանօրէն մտածելով այդ այդպէս էլ պէտք է որ լինի, որովհետեւ մեզ թւում է որ ռուս մեծ ժողովուրդը իր իսկական ազատութեան, իրաւունքների եւ ճակատագրի տէր եւ տնօրէն դառնալով, պահանջելու է որ այլեւս մի կողմ թողնուին ընկած կայսերական միահեծանութեան հնչակած նախագծերը, ինչ որ չը հակառակելով ճնշուած ժողովուրդների բաղձանքին, նրանց առաջ-մղիչը եւ պաշտպանը կը լինի։ Այս ամենը թւում է թէ տրամաբանական է, բայց, արի տես որ դժբաղդութեան մի ողբերգական խաղով խոտորած՝ Հայաստանի ամենաչնչին օրերի պատմութիւնը մեզ ասում է՝ չօրօրուել միմիայն յոյսերով, եւ մենք, այսօր, փոխանակ մի օրհներգով փառաբանելու ռուսական յեղափոխութիւնը որպէս հայերի փափագներին յաղթանակը նպաստաւորող դէպք, սպասելու ենք որ այսօր Ռուսաստանի կառավարութեան գլուխ կեցած մարդիկ պարզեն իրենց ընթանալիք ուղին, ցոյց տան մեզ գործով, թէ ռուս ազատ ժողովուրդը Քառեակ Համաձայնութեան մէջ մնալով, հայ հարցի լուծման մէջ—հարց որ իսկապէս միայն հայերի հարց չէ այլ համաշխարհային հարց—ինչ դիրք է բռնելու։

Մինչ այդ մի քանի նշաններ կան արդէն։ Մինիստր Քերենսկին մի տեսակցութեան մէջ ասեց իւր հայեացքը Հայաստանի ինքնավարութեան մասին։ Իսկ արտաքին գործերի նախարար Միլիւքովը մի այլ զրուցատրութեան (intervista) մէջ որ նա ունեցաւ մամուլի ներկայացուցիչների հետ, ներկայ պատերազմի մէջ համաձայնութեան պետութիւնների հետապնդած նպատակների շուրջ, արտայայտուեց նաեւ Հայաստանի մասին։ Մեզ դեռ յայտնի չեն Միլիւքովի բոլոր ասածները. մենք մեր դատողութիւններն անում ենք *Քորրիէրէ Տէլլա Սէրա*-ի թղթակցի տարւոյս ապրիլ 5 թուականաւ հեռագրից մեր ստացած տպաւորութեան համեմատ։ «. . . . Այս նպատակներից զատ Համաձայնութեան Պետութիւնների եւ ի մասնաւորի Ռուսաստանի նպատակն է ազատել Հայաստանը թուրքական լուծից։ Մենք չենք կարող հանդուրժել որ հայերը սրանից յետոյ էլ շարունակեն մնալ թուրքաց տիրապետութեան տակ։ Սրանից զատ, ինչպէս որ արդէն վճռուած է, նորոգել մի ազատախոհ մտայնութեամբ՝ նաեւ մնացեալ ազգերի ճակատագիրը, ինչպիսին է օրինակ՝ արաբներինը, որ նմանապէս, թուրքի տիրապետութեան տակ է գտնւում։ Թուրք իշխանութեան լուծի տակ նեղուող ազգերի ազատութեան մասին խօսելով, Համաձայնութեան Պետութիւնները նպատակ չունին բնաւ իրենց կարգին իրենց լուծը դնել թուրք ժողովրդի վզին։ Կ. Պոլսի եւ Նեղուցների խնդիրը չի կարելի թուրք ժողովրդի շահերին հակառակ մի բան նկատել, քանի որ թուրք ազգը, հակառակ այդ տեղերի վրայ իւր 500 ամեայ տիրապետութեան, չի կարողացել խոր արմատներ ձգել։ Նեղուցների հարցի լուծման կերպը արդէն վճռուած է մեր դաշնակից պետութիւնների համաձայնութեամբ եւ ըստ մեր ազգային շահերի հայեցակէտի, մեր (ռուսաց) այդ նեղուցներին տիրապետելը, չի հակասում մինչեւ իսկ Վիլսոնի ձեւակերպած սկզբունքներին։ Նեղուցները մեր տան դռան պահպանութիւնն են եւ հասկանալի է որ այդ պահպանութիւնը մեզ էլ պէտք է պատկանի»։

Թէ ի՞նչ ասել ուզում է նախարար Միլիւքովը «հայերի ազատագրում»-ը խօսքերով, պարզ չէ մեզ համար։ Բայց Ստէֆանիի գործակալութեան այս զրուցատրութեան մասին տուած պարզաբանութիւնը (versione) բաւականին լոյս է սփռում կադէտների կուսակցապետի մտածելակերպի վրայ։

—«Հայաստանը պէտք է որ գտնուի ռուսական հովանաւորութեան տակ, քանի որ մենք պարզ տեսանք վերջին ժամանակների անցքերից, որ անկարելի է Հայաստանը թողնել թուրքաց լուծի տակ։»

Հարկ է շնորհակալ լինենք ռուս արտաքին գործերի նախարարից՝ որ հաստատում է թէ հայերի ազատութիւնը Համա-

ձայնութեան Պետութիւնների ձգտած նպատակներից մին է և անթոյլատրելի որ սրանից յետոյ էլ հայերը թողնուին Թուրքի լծի տակ. բայց և այնպէս չի կարելի չի նկատել այն անտրամաբանական եզրակացութիւնը՝ որ նա հանում է, ըստ որում պնդելով որ «Հայաստանը պէտք է գտնուի ռուսաց հովանաւորութեան տակ, (մի հովանաւորութիւն որ հաւանաբար նշանակում է քօղարկուած (larvata) կցում Ռուսաստանի հետ). կարծես թէ հայ հարցը ուրիշ նշանակութիւն չէր ունեցել, բայց եթէ «կամ Թուրքի կամ ռուսի տիրապետութիւն»։

Մենք որ շատ առիթներով մէջ բերել ենք և վիճել երբեմն կայսերական Ռուսաստանի Դումայի անդամ Միլիւքովի յայտնած մտքերը, ցաւօք սրտի նկատում ենք որ այդ միևնոյն մտքերը շարունակում են մնալ յեղափոխուած Ռուսաստանի արտաքին գործերի մինիստր Միլիւքովի մօտ։

Եթէ գաղափարները նոյնն են, այն ժամանակ արտաքին գործերի նախարարի բերնում նրանք գտնում են մեզ համար մի առանձին լրջութիւն (gravità)։ Արդարև, մինչև այսօր ոչ մի ռուս մինիստր չէր արտայայտուած բնաւ հայ ժողովուրդի ճակատագրի շուրջ։ Եւ ոչ միայն այսքանը, նախայեղափոխական շրջանի կայսերական Ռուսաստանի վերջին մինիստրները բազմաթիւ անգամ յայտարարել էին որ, Ռուսաստանի կէտ նպատակն կայանում է միայն Կ. Պոլսին տիրելը եւ լեհական նահանգների ամբողջացումը։ Այս այսպէս լինելով մենք իրաւամբ յոյս ունէինք որ Քառեակ Համաձայնութիւնն էլ չէր մտածում Հայաստանի հարցի պէս միջազգային մի հարցի լուծման մէջ իր մասնակցութիւնից հրաժարուելու։ Իսկ այժմ մենք մտահոգւում ենք չը գիտենալով թէ մինիստր Միլիւքովը ում կողմից է խօսում այդպէս, իր անձնականի՞ց, ռուսական ժամանակաւոր կառավարութեա՞ն, թէ՞ Քառեակ Համաձայնութեան կողմից։

Մինիստր Միլիւքովի յայտարարութիւնները եթէ Համաձայնութեան Պետութիւնների անունից են, այն ժամանակ նրանք ողբերգական են հայերի համար, ըստ որում դուրս կուգայ որ այդպիսով հարցը դադարելով լինել միջազգային հարց. լինում է մի գլխովին Ռուսաստանի ձեռնհասութեան ենթակայ հարց։ Համաձայնութեան արևմտեան պետութիւնների կողմից հայ հարցի լուծումի գործին խառնուելուց այս ենթադրեալ կամովին հրաժարումը, կարևոր է արձանագրել։ Արդարև եթէ ճշմարիտ են ռուս յեղափոխութեան որոշ նախընթացները, ըստ որում պէտք է արդար լինել այն ժողովուրդին նկատմամբ յանձին որոյ արդարութեան, իրաւունքի և ազգայնութեան սկզբունքներ անօրինակ կերպով ոտնատակ տրուեցին, ինքնին բաւական է հերքելու և ցոյց տալու համար ստութիւնը այն օրհներգին, որ հանապազօր երգւում է յանուն այդ սկզբունքների։ Այս ամենը մենք ասում ենք ոչ այն պատճառաւ, որ Ռուսաստանի պատմական այս կարևոր ժամին մեր մէջ պակասում է բարեկամութիւնը դէպի ռուս մեծ ժողովուրդը, այլ որովհետև ըստ մեզ բարեկամութիւնը չի նշանակում և չի պիտի լինի ենթարկում։ Ապա մինչև նոր հակառակ փաստեր չը գան համոզել մեզ որ արևմտեան Համաձայնութեան Պետութիւնները հրաժարուել են այդ հարցի լուծման մասնակցելուց, մենք չենք հաւատալու մինչ այն ասուած և գրուած բաներին։ Մենք չենք կարծում նաև որ հայ հարցի մասին մինիստր Միլիւքովի յայտարարութիւնները նոր յեղափոխուած Ռուսաստանի կարծիքի արտայայտութիւնը կամ անդրադարձութիւնը լինին։

Corrado Corradino

Իտալ. Թարգմ. Ա. Փէթվաճեան

(Շարունակելի)

# ՌԱԶՄԱԿԱՆ ՏԵՍՈՒԹԻՒՆ

Ռուսական բանակը յունիսի 18 ից սկսեալ զինուորական նախարար Կերենսկու հրամանով յարձակողականի է անցել գերմանական և աւստրիական ճակատների վրայ։ Բանակը, որ երկար ժամանակ անգործութեան դատապարտուելով կազմալուծուել ու բարոյապէս էլ քայքայուել էր, այժմ յարձակման անցնելով ցոյց է տալիս մեծ ոգևորութիւն և եռանդ։ Բարձրանում է թէ զօրքի և թէ ժողովրդի հոգեկան կորովը։ Շատ քչերն են ռազմաճակատի զօրքերից, որոնք թունաւորուած են եղբայրացման թոյնով։ Տակաւին շատ են այն տարրերը, որոնք դէմ են Կերենսկու կարգադրութեան, որոնք ուզում են պղտոր ջրի մէջ ձուկ որսալ։ Կերենսկին մի յայտարարութեամբ յունիսի 18-ին դիմել է ժամանակաւոր Կառավարութեան, որ յարձակողականի անցնող զօրքըն ունենայ իր դրօշակը և յեղափոխական անուն կրի։ Կառավարութիւնը համաձայնուել է և յունիսի 18-ի փառապանծ գնդերը այժմ սլանում են առաջ։

Յունիսի 18-ի կռւում վերցուած են 164 սպայ և 8,300 զինուոր, վերցուած են նաև 7 թնդանօթ և նոյնքան գնդացիր։ Բերդժանից հարաւ-արևմուտք ռուսները հրետանու նախապատրաստութիւնից յետոյ յարձակեցին թշնամու սաստիկ ամրացած դիրքերի վրայ։ Կովելի ուղղութեամբ, Ռուտկա-Միտովիչսկայի շրջանում ռուսները առաջ անցան։ Զոլոչեի ողղութեան վրայ, հրետանու երկօրեայ նախապատրաստութիւնից յետոյ ռուսական զօրքը յարձակուեց աւստրո-գերմանական դիրքերի վրայ։

Զբորովից հարաւ արևմուտք, յունիսի 19-ին ռուսները գրաւեցին մի գիւղ և գրաւեցին թշնամու երեք շարք ամրացած դիրքերը։ Յունիսի 19-ին Զոլոչեի ուղղութեան վրայ գերի է վերցուած 6,300 սպայ և զինուոր։ Կռիւները ամեն ճակատում շարունակւում են լարուածութեամբ։ Յունիսի 18-ի և 19-ի ընթացքում վերցուած գերիների ամբողջական թիւը հասնում է 300 սպայի և 18,000 զինուորի. գրաւուած թնդանօթների թիւը հասնում է 29-ի, իսկ գնդացիրների թիւը 33-ի։

Կովկասեան ճակատում ռուսները գրաւեցին Պէնջուին։ Թիւրքերը փախչում են։ Ռուսները գրաւեցին նաև Ինդիջու գիւղը։ Կալա-Միրովան ամրութիւնը, Աբի-Խէն և Դեբէխէն գիւղերը։

Ֆրանս-Անգլիական ճակատում՝ Սերնիից արևեք թշնամին գրոհ տալով գրաւեց Այլ-Պասսի ճանապարհի երկու կողմերը, ֆրանսիական ճակատից 1,500 մետր տարածութիւն։ Այդտեղ ֆրանսիական ամրութիւնները հողի են հաւասարուած։ Թշնամու յարձակումը կասեցուեց։

Մորատմից արևմուտք սաստիկ կռիւ է, Անգլիացիները Լանսից հարաւ զարգացնելով իրենց աջողութիւնը՝ Սուշէ գետի հիւսիսային ափում գրաւեցին թշնամու պաշտպանողական շինութիւնները։

Ճակատի բոլոր մասերում լարուած կռիւ է։

# Գեղարուեստ

## ԳԱՐՆԱՆ ԳԻՇԵՐ

Գարնան գիւթիչ գիշերն իջաւ,
Ծաղիկ-ծաղկունք քուն մտան.
Թեթև հովը սարից իջաւ
Բաղխեց դուռը իմ փակ տան։

Խելառի պէս վեր թռայ ես,
Ու դուրս եկայ պատշգամբ.
Լուռ էր շուրջս, երազի պէս,
Երկինքը պարզ ու անամպ։

Եւ ոսկեշող աստղերը վառ,
Հոգուս լազուր կամարում,
Ժպտում էին փարւում իրար,
Սուզւում լոյսի ծովերում։

Ոչ ոք չ'կար իմ տան շէմքին,
Թեթև հովն էր ինձ կանչել.
Մենակ սրտիս անխօս ճամբին՝
Գարնան գիշերն էր իջել։

Վարսենիկ Աղասեան

# Տարեգիր Կ. Հ. Բ. Ընկ.

Կ. Հ. Բ. Ընկ. Խորհուրդը շնորհակալութեամբ ստացել է եղբ. Սէյլանեաններից 300 ռ. մշտական անդամութեան համար։

—Նոյն եղբայրներից դպրոցական նպաստ 300 ռ.

## ՀԱՅԿ. ԿԵՆՏ. ԿՈՄԻՏԷ

Մայիսի 19-ին կայացաւ Հայկ. Կենտր. Կոմիտէի հերթական նիստը՝ Նախագահութեամբ պ. Ս. Յարութիւնեանի, ուր հետևեալ զեկուցումներն ու որոշումները եղան.

ա) Գ. Նախագահը զեկուց «Մի բաժակ թէյ»-ի մայիս ամսուայ հաշիւները, որից երևաց, որ մայիսի 1-ից մինչև յունիսի 1-ը մուտք է եղել 14,911 ռ. 51 կ., ծախս՝ 10,704 ռ. 89 կ., մաքուր արդիւնք՝ 4,206 ռ. 62 կ., բացի այս մաքուր արդիւնքից մայիսի 21-ի և 22-ի ամբողջ հասոյթը՝ 700ռ. յատկացրուած է զինուորական Կոմիտէին։

Որոշուեց դրամը մուծել Կոմիտէի կասսան, իսկ հաշիւները փաստաթղթերով յանձնել հաշուապահին ստուգութեան։

բ) Խնուս-Մուշի լիազօր պ. Կարօ-Սասունին, որը նոր է վերադարձել Խնուսից, տուեց մի ընդարձակ և հետաքրքրական զեկուցում՝ այդ վայրերի Կոմիտէի ունեցած կազմակերպութեանց մասին, որից երևաց որ Խնուսում ունեցել ենք մի պահեստ, երկու որբանոց, երկու դպրոց և սննդատու կայան։

Վերոյիշեալ հաստատութիւններից որբանոցների Կոմիտէի կարգադրութեամբ փոխադրուել են Ցարսկի Կոլոդցի, դպրոցներն էլ փակուել ամառնային արձակուրդի պատճառով, սակայն որբանոցի կարիքը մեծ է, որովհետև շարունակ թշնամու ձեռքից ազատւում են երեխաներ, որոնց հարկաւոր է մի տեղ հաւաքել։

Միւս կողմից երկրում կարգաւորելով բոլոր գործերը ու բաժանելով տեղական գործիչների միջև, պ. Կարօ-Սասունին առաջարկեց ազատել իրան այդ շրջանի լիազօրութեան պաշտօնից, որովհետև սաստիկ յոգնած է և տկար, կարիք է զգում բժշկութեան։

Լսելով պ. Կարօ-Սասունու հետաքրքրական զեկուցումը, ժողովը յայտնեց նրան շնորհակալութիւն նրա արդիւնաւէտ գործունէութեան համար, ցանկութիւն յայտնելով նրան շուտափոյթ բժշկութիւն, որպէս զի դարձեալ վերադառնայ և անցնի իւր սիրած գործին, որից յետոյ կատարուեց հետևեալ որոշումները.

Խնուսում դարձեալ ունենալ որբանոց շուրջ 100 որբի համար, ունենալ նաև սննդատու կայան։

գ) Լսուեց Ալաշկերտի լիազօր պ. Գ. Փարաջանեանի զեկուցումը՝ Կոմիտէի այդ շրջանի հաստատութեանց մասին, որից պարզուեց որ Ալաշկերտի որբանոցում ներկայիս կան 120 որբ, որոնց համար բացուած և հիմնուած են գիւղատնտեսական աշխատանքների համար բանջարանոցներ, որոնց մէջ աշխատում են չափահաս որբերը։

Ալաշկերտի սննդատու կայանը շատ մեծ ծառայութիւն է մատուցել վերադարձող գաղթականութեան և գարնան սկիզբներին այդ կայանից ահագին քանակութեամբ գաղթականութիւն է անցել դէպի երկիր, որոնք բոլորն էլ ստացել են թէյ, շաքար և հաց։

Կոմիտէն շնորհակալութեամբ ընդունեց նրա զեկուցումը. իսկ հաշիւները որոշուեց յանձնել հաշուապահին ստուգութեան։

## ՊԱՐԵՆԱՒՈՐՄԱՆ ԲԱԺԱՆՄՈՒՆՔ ՊԵՏ. ՄԻՋՈՑՆԵՐՈՎ

Ցորեն ուղարկուած է Իգդիր 3 վագոն, Վաղարշապատ՝ 3, Աշտարակ՝ 2, Ղորդուղուլի՝ 2, Ղարաքիլիսա՝ 1, Ներքին Ախտա՝ 1, Երևան՝ 2, Ղամարլու՝ 1 և Ալէքսանդրապոլ՝ 2, ընդամենը 17 վագոն։

Բացի սրանից հացի պակասութեան պատճառաւ Թիֆլիսի Քաղաքային Պարենաւորման Կոմիտէն գրաւեց գաղթականների համար եկած 7 վագոն ցորեն և մի վագոն ալիւր։

Կարգադրութիւն է եղած Վաղարշապատի պահեստի կառավարչին Թալինում պահեստ բանալ և Եղբայրական Օգնութեան Թալինի շրջանի գաղթականների կարիքների համար տալ ամսական 1 վագոն ալիւր։ Նոյն շրջանն է ուղարկուած լիազօր պ. Ա. Աղայեանը՝ տեղում պահեստ բանալու։

Թիֆլիս վերադարձան պ. պ. Աւետեանը և Արամեանը, որոնք ուղարկուած էին Սարիղամիշի, Էրզրումի և Գանձակի շրջանը՝ քննելու պահեստների գործունէութիւնը։ Նրանք զեկուցին, որ բոլոր վայրերում գործը կանոնաւոր հիմքերի վրայ է դրուած և բոլոր պահեստների կառավարիչները իրենց կոչման միանգամայն համապատասխան բարձրութեան վրայ են գտնւում։

# Քրոնիկոն

Յունիսի 20-ին, առաւօտեան ժամը 10-ին Եսիմովսկու ցիրկում տեղի ունեցաւ Անդրկովկասեան գիւղացիական Համագումարի պաշտօնական բացումը։

—Քաղաքային դումայի իրաւասուների ընտրութիւնը կայանալու է առաջիկայ յուլիսի 30-ին։

—Յունիսի 15-ին կայացաւ Կովկ. կօօպերատիւների ներկայացուցիչների համագումարը։

—Անդրկովկ. Առանձին Կոմիտէին կից կազմուած դպրոցների ազգայնացման գործով զբաղուող յանձնաժողովն արդէն սկսել է իր գործունէութիւնը։

—Յունիսի 16-ին Ալէքսանդրապոլում բացուեց թիւրքահայ ուսուցիչների համագումարը։

—Յունիսի 13-ին Ալէքսանդրապոլում Հ. Յ. Դաշնակցութեան նախաձեռնութեամբ գումարուեց շրջանի գիւղացութեան համագումարը։

—Ինչպէս յայտնի է, Թիֆլիսում հրատարակւում էր «Արշալոյս» անունով գրական-գեղարուեստական և քննադատական ալմանախ։ Նկատի ունենալով որ այդ ալմանախը աւելի փոքր ծաւալ և արտայայտութիւն ունէր, մի խումբ երիտասարդ գրողների շրջանում միտք յղացուեց յիշեալ ալմանախը դարձնել աւելի ընդարձակ շրջանի արտայայտութիւն և ուշք դարձնել բովանդակութեան ճոխութեան։ Ուստի որոշուեց ալմանախի անունը դնել Հրազդան և հրատարակել մեր երիտասարդ գրողների աշխատակցութեամբ։

—Կ. Հ. Բ. Ընկ. կից գաղթականներին նպաստող պարենաւորման բաժանմունքի Թիֆլիսի կայարանում ստացած ալիւրը և ուրիշ մթերքները գրաււում են քաղաքային պարենաւորման մարմնի կողմից, այդ պատճառով էլ փախստականները մնում են քաղցած։ Այդ մասին դիմումներ են եղել գրաւումն արգելելու համար։

—Գաղթականական գործերի մէջ միութիւն ստեղծելու համար Թիֆլիսում գործող կազմակերպութիւնների ներկայացուցիչներն ու թրքահայ համագումարից ընտրուած Խորհուրդը մշակում են միութեան ծրագիր։ Հիմնուելու է մի կենտրոնական կոմիտէ 30 հոգուց բաղկացած, իսկ աշխատանքները բաժանուելու են կազմակերպութիւնների մէջ փոխադարձ համաձայնութեամբ։

## ՏԵՂԵԿԱՏՈՒ

Հ. Կ. Կոմիտէն հետևեալ անձերին խնդրում է մտնել գրասենեակը կամ ուղարկել իրենց հասցէն, որովհետև իրենց անունով ընկալագիր ստացուած է, բայց դեռ դրամը գանձուած չէ։

Սրապիոն Մ. Գալարեանին 354ռ., Ս.Ս. Ռապյեանին 180ռ., Իսկուհի Փափազեանին 180 ռ., Մ. Թոքիչեանին 120 ռ.։

# ՌՈՒՍԱՀԱՅՈՑ ՀԱՄԱԳՈՒՄԱՐ

Ռուսաստանի մեծ յեղափոխութիւնից յետոյ՝ հայ ժողովրդի զանազան տեղերից առաջարկութիւններ եղան, թէ անհրաժեշտ է ռուսահայոց պատգամաւորական ժողով գումարել, ընդհանուր-պետական և ազգային-հասարակական հրատապ խնդիրների քննութեան համար։ Այս առիթով Թիֆլիսում գումարուեցին խորհրդակցական ժողովներ, 60—65 անձի մասնակցութեամբ, թէ Թիֆլիսի և թէ ուրիշ քաղաքների ազգային հաստատութիւնների և քաղաքական հոսանքների ներկայացուցիչներից։ Որոշուեց անհրաժեշտ ճանաչել ռուսահայոց համագումար հրաւիրել և այս որոշման իրագործումը ժողովը յանձնեց միջկուսակցական խորհրդակցութեան, բաղկացած 15 անձից, տալով նրան կօօպերացիայի իրաւունք և յանձնարարելով, ըստ կարելոյն շուտով կազմակերպել և հրաւիրել ռուսահայոց համագումարը։

Այս հիման վրայ միջկուսակցական խորհրդակցութիւնը անմիջապէս գործի ձեռնարկելով՝ ունեցաւ մի շարք նիստեր, որոնց մշակեց հրաւիրելիք ժողովի համար կանոնադրութիւն, հրահանգ և բաժանեց հայ ազգաբնակութիւնը ընտրական շրջանների։

Խորհրդակցութիւնն ի նկատի ունենալով մի կողմից համագումարն ըստ կարելոյն շուտ հրաւիրելու պահանջը և միւս կողմից ընտրական բարդ գործողութիւնները՝ հնարաւոր գտաւ ընտրութիւնները նշանակել, միաժամանակ—քաղաքներում և գիւղերում յուլիսի 23-ին, իսկ համագումարը հրաւիրել օգոստոսի 20-ին։ Համագումարը որոշուեց գումարել Թիֆլիսում։

Միջկուսակցական խորհրդակցութիւնը մշակեց իր կողմից օրակարգ պարապմունքների, որ դրւում է ստորև։ Այս առիթով խորհրդակցութիւնը յայտարարում է, որ 1) սկզբունքով որոշուեց օրակարգի մէջ դնել զուտ ռուսահայկական և ընդհանուր պետական բնաւորութիւն ունեցող հարցեր. 2) սակայն համագումարին է վերապահւում այս օրակարգից որևէ կէտ դուրս ձգել կամ ընդհակառակն նրան լրացնել նոր հարցերով թէ ռուսահայ և թէ առհասարակ ընդհանուր հայութեան վերաբերեալ։

Միջկուսակցական խորհրդակցութիւնը որոշեց ընտրական շրջանների կենտրոններում հիմնել շրջանային միջկուսակցական կոմիտէներ, որոնք պէտք է կազմակերպեն ընտրական գործը իրենց շրջանում համաձայն այս կանոնադրութեան և հրահանգի, որ առանձին կուղարկուի։

### Ա.

### ՕՐԱԿԱՐԳ

1) Վերաբերմունքը դէպի ներկայ քաղաքական մոմենտը, դէպի Ժամանակաւոր Կառավարութիւնը և դէպի պատերազմը։

2) Ռուսաստանի ապագայ քաղաքական կազմը։

3) Անդրկովկասի ապագայ քաղաքական կազմը և նրա կապը Ռուսաստանի հետ։

4) Փոքրամասնութեան իրաւունքը։

5) Հողային հարցը։ Գիւղացու տնտեսական վիճակը։

6) Լեզուների իրաւունքը պետական հիմնարկութիւնների մէջ։

7) Դպրոցական խնդիրներ (պետական դպրոցների ազգայնացում, ազգային դպրոցներ, Լազարեան ճեմարան)։

8) Եկեղեցու փոխ-յարաբերութիւնը պետութեան հետ։

### Բ.

### ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹԻՒՆ

1) Իւրաքանչիւր ռուսահայ՝ 20 տարին լրացրած՝ առանց սեռի և դաւանութեան խտրութեան, իրաւունք ունի մասնակցե-

լու պատգամաւորների ընտրութեանը որպէս ընտրող և ընտրուող։

2) Պատգամաւորների ընտրութիւնը կատարւում է ընդհանուր, հաւասար, համեմատական (պրոպորցիոնալ), անմիջական և գաղտնի ձայնատւութեամբ։

3) Ռուսահայ ժողովրդի իւրաքանչիւր 10,000 հոգուց մէկ պատգամաւոր է լինելու։ Ընտրական շրջանների և ընտրելի պատգամաւորների թուի մասին տես ցուցակ ընտրական շրջանների։

4) Իւրաքանչիւր ընտրող կարող է ունենալ միայն մէկ ձայն։ Իւրաքանչիւր ընտրող իր ընտրողական իրաւունքը կարող է գործադրել միայն մէկ ընտրական շրջանում։

Ընտրուել կարող են մարդիկ անկախ այն հանգամանքից, թէ որ ընտրական շրջանումն են բնակւում,

5) Ընտրութիւնը կատարելու կարգերը որոշուած են առանձին ընտրական հրահանգով*)։

6) Ընտրութիւնները կազմակերպելու, կարգադրելու և վարելու համար հաստատւում են՝ կենտրոնական յանձնաժողով Թիֆլիսում, այլև 11 շրջանային ընտրական յանձնաժողովներ տեղերում (տես ցուցակ ընտր. շրջանների), որոնք բաղկացած են 6-7 անդամներից՝ հայ քաղաքական կուսակցութիւնների տեղական անդամներից։

7) Կենտրոնական ընտրական յանձնաժողովը Թիֆլիսում՝

ա) Հսկում է ընտրութիւնների կանոնաւորութեան վրայ ամենուրեք ընդհանրապէս,

բ) Լուծում է սոյն կանոնադրութեան և ընտրական հրահանգի գործադրման առիթով ծագող տարակուսանքները և բացատրութիւններ է տալիս։

գ) Հարկաւոր հրահանգներ է տալիս շրջանային յանձնաժողովներին.

դ) Շրջանային յանձնաժողովների զեկուցագրերի հիման վրայ կազմում է և հրատարակում պատգամաւոր ընտրուածների ընդհանուր ցուցակը։

8) Իւրաքանչիւր ընտրող ինքն անձամբ պէտք է տայ իր ձայնը.

9) Ընտրութիւնների անկանոնութիւնների դէմ բողոքները, հարկաւոր բացատրութիւններով հանդերձ, տրուելու են ընտրական յանձնաժողովներին ընտրութիւնը կատարուելուց յետոյ երեք օրուայ ընթացքում։ Այդ բողոքները յիշեալ յանձնաժողովի կենտրոնական ընտրական յանձնաժողովի միջոցով ներկայացւում են ռուսահայոց համագումարին, որից և կախուած է պատգամաւորների ընտրութիւնների քննութիւնը, ստուգումն ու վաւերացումը։

## ՑՈՒՑԱԿ
## ԸՆՏՐԱԿԱՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԵՒ ՊԱՏԳԱՄԱՒՈՐՆԵՐԻ

| Շրջանակներ | | Հայ ազգաբնակ. | Պատգամաւ. |
|---|---|---|---|
| | 1. Երևանի շրջան. Կենտ. Երևան | | |
| 1,1 | Երևան քաղաք | 37,000 | 4 |
| 2,2 | Երևանի գաւառ | 70,000 | 7 |
| 3,3 | Նոր-Բայազէդ՝ գաւառով | 130,000 | 13 |
| 4,4 | Հին-Նախիջևան՝ գաւառով | 55,000 | 5 |
| 5,5 | Վաղարշապատ՝ էջմիածնի գաւ. | 110,000 | 11 |
| 6,6 | Իգդիր՝ Սուրմալուի գաւառով | 32,000 | 3 |
| 7,7 | Շարուր-Դալարագեաղ | 30,000 | 3=46 |
| | 2. Ալէքսանդրապոլի շրջան. Կենտ. Ալէք. | | |
| 1,8 | Ալէքսանդրապոլ քաղաք | 44,000 | 4 |
| 2,9 | Ալէքսանդրապոլի գաւառը | 150,000 | 15=9 |
| | 3. Կարսի շրջան. Կենտրոն. Ղարս | | |
| 1,10 | Ղարս, Օլթի, Արդահան | 28,000 | 3 |
| 2,11 | Ղարսի գաւառ | 53,000 | 5 |
| 3,12 | Կաղզուան քաղաք | 9,000 | 1 |
| 4,13 | Կաղզուանի գաւառ | 25,000 | 15=19 |
| | 4. Թիֆլիսի շրջան. Կենտրոն Թիֆլիս | | |
| 1,14 | Թիֆլիս քաղաք | 150,000 | 15 |
| 2,15 | Թիֆլիսի գաւառ | 26,000 | 3 |
| 3,16 | Ախալցխա՝ գաւառով | 22,000 | 2 |
| 4,17 | Գորի և Դուշէթ | 11,500 | 1 |
| 5,18 | Գորուայ գաւառը | 17,000 | 2 |
| 6,19 | Սղնախ՝ գաւառով | 21,000 | 2 |
| 7,20 | Թելաւ՝ գաւառով | 10,000 | 1 |
| 8,21 | Ախալքալաք՝ գաւառով | 70,000 | 7 |
| 9,22 | Բորչալուի գաւառ | 66,000 | 7=40 |
| | 5. Շուշուայ շրջան. Կենտրոն Շուշի | | |
| 1,23 | Շուշի՝ գաւառով | 100,000 | 10 |
| 2,24 | Դիզակ և Զանգեզուր | 100,000 | 10 |
| 3,25 | Կարեագինի գաւառ | 22,000 | 2=22 |
| | 6. Գանձակի շրջան. Կենտրոն Գանձակ | | |
| 1,26 | Գանձակ՝ գաւառով | 70,000 | 7 |
| 2,27 | Նուխի՝ գաւառով | 25,100 | 3 |
| 3,28 | Ղազախ՝ գաւառով | 61,000 | 6 |
| 4,29 | Արէշի գաւառ | 20,000 | 2 |
| 5,30 | Ջիւանշիրի գաւառ | 22,000 | 2=20 |
| | 7. Բագուայ շրջան. Կենտրոն Բագու | | |
| 1,31 | Բագու, Կուբա, Լենքորան, Սալեան | 78,000 | 8 |
| 2,32 | Շամախի՝ գաւառով | 22,000 | 2 |
| 3,33 | Գեօքչայի գաւառ | 17,000 | 2=12 |
| | 8. Բաթումի շրջան. Կենտրոն Բաթում | | |
| 1,34 | Բաթում իր շրջանով | 15,000 | 2 |
| 2,35 | Քութայիս՝ գաւառով | 4,000 | 1 |
| 3,36 | Սուխումի շրջան | 20,000 | 2 |
| 4,37 | Նովոռոսիյսկ շրջանով | 18,000 | 2=7 |
| | 9. Դաղստանի շրջան. Կենտրոն Արմաւիր | | |
| 1,38 | Դերբենտ և Դաղստանի շրջան | 5,000 | 1 |
| 2,39 | Արմաւիր, Եկատերինոդար, Մայկոպ | 25,000 | 3 |
| 3,40 | Վլադիկավկազ, Կզլար, Պեատիգորսկ, Մոզդոկ շրջանով | 30,000 | 3=7 |
| | 10. Հաշտարխանի շրջան. Կենտրոն Հաշտարխան | | |
| 1,41 | Հաշտարխան, Ստաւրոպոլ, Սարատով, Ցարիցին (Սիբիր) | 10,500 | 1 |
| 2,42 | Ասխաբադ և Թուրքեստ. շրջան | 11,300 | 1=2 |
| | 11. Բեսարաբիայի շրջան. Կենտ. Նոր.-Նախ. | | |
| 1,43 | Պետրոգրադ, Մոսկւա, Կիև, Խարկով | 22,000 | 2 |
| 2,44 | Նոր-Նախիջ. գիւղերով և Ռոստով | 40,000 | 4 |
| 3,45 | Քիշինեվ, Օդեսսա, Ակկերման | 10,000 | 1 |
| 4,46 | Ղրիմ, Տաւրիկեան նահանգ | 10,000 | 1=8 |
| | Ընդամենը 11 շրջան, 46 շրջանակով | 1,924,300 | 185 |

*) Ընտրական հրահանգը կուղարկուի առանձին։

Խմբագիր՝ ՍԱՄՍՈՆ ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ.

Հրատ. Կ. Հ. Թ. ԸՆԿԵՐՈՒԹԻՒՆ

Тип. «СЛОВО» Гимназическая ул. № 1